# Ազգագրական հանդէս
# *Azgagrakan Hande's [Ethnographic Review]*

# Գոշայ վանք կամ Նոր Գետիկ
# Goshavank' or Nor Getik

Isahak Harutiwnian's study of Goshavank', from the journal *Azgagrakan Hande's [Ethnographic Review]* X (1903), pp. 5-38. Compiled and indexed by Robert Bedrosian, October, 2015, in 35 pdf pages.

---

## X գիրք (1903)

Յարութիւնեան, Իս. Գոշայ վանք կամ Նոր Գետիկ.

# ԳՈՇԱՅ ՎԱՆՔ

ԿԱՄ

# ՆՈՐ ԳԵՏԻԿ

(ԻՍԱՀԱԿ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆԻ)

---

## Ա

## ՊԱՏՄԱԿԱՆ

Տասներկու և տասներեքերորդ դարերում, երբ Հայաստանը Թաթարների ձեռքով աւերւում և ազգաբնակութիւնը Թշնամիներից կողոպտւում ու չարաչար հալածանքի էր ենթարկւում, ուսման և քաղաքակրթութեան ջահը համարեա թէ բոլորովին մարել էր հայ ժողովրդի մէջ։ Ուրիշ կերպ չէր էլ կարող լինել․ իւրաքանչիւր ժողովրդի քաղաքակրթութեան առաջադիմութիւնը պայմանաւորւում է կեանքի խաղաղ և անդորր զարգացմամբ։ Երբ մի ժողովուրդ ստիպուած է ամեն վայրկեան յարձակման երկիւղի մէջ լինել և իւր գոյութիւնը պահպանելու համար՝ հարկադրուած է շարունակ պաշտպանուելու մասին մտածել կամ թէ անհաւասար ուժի առաջ տեղի տալով փախուստի դիմել, հարկաւ չի կարող ուսմամբ, արուեստով կամ գեղարուեստով զբաղուել։

Երկիւղը դիւրութեամբ երկիւղածութեան զգացմունք է առաջացնում. Թշնամիներից հալածուած և տնտեսապէս աղքատացած ժողովուրդը հոգու փրկութեան մասին է մտածում և փառաւոր վանքեր կառուցանում։ Թէև մեր պատմագրութիւնը վանքերի շինութիւնը միշտ իշխաններին և ականաւոր հոգևորականներին է վերագրում, սակայն մեր կարծիքով ժողովրդի հոգեկան տրամադրութիւնն էլ պէտք է մեծապէս նպաստած լինի այդ գործին։

Մեր նշանաւոր վանքերից շատերն այս ժամանակաշրջանումն են կառուցուել, կամ վերանորոգուել ու փառաւէն դարձել։ Սակայն բարեպաշտաբար այդ վանքերը միայն իրենց մէջ խմբուած հարիւրաւոր կուսակրօնների ստամոքսը պարարտացնելու գործով չեն սահմանափակուել, այլ որոշ քաղաքակրթական դեր են խաղացել։ Դրանցից շատերը մէկ-մէկ յայտնի դպրոցներ են եղել, որոնց մէջ ղեկավարող են հանդիսացել ժամանակի ուսումնականութեամբ օժտուած և տաղանդաւոր խելքի տէր մարդիկ. դոքա իրենց գաղափարներն ուսուցանելով վանքերում՝ հետևողներ են պատրաստել և այդպիսով որոշ ուղղութեամբ ղեկավարել մտքերը։ Երբեմն այդ ուսուցանող հոգևորականների ազդեցութիւնն այնքան մեծ է եղել ժողովրդի վրայ, որ երկրի իշխանները քաշուել, երկիւղ են կրել դրանցից կամ դրանց օգնութեամբը դիմել կարևոր դէպքերում. Ժողովուրդը յարգում և պատւում էր միշտ վանականներին, որովհետև վանականները կամ կուսակրօն հոգևորականութիւնը միշտ ժողովրդի շահերն էր պաշտպանում և նրա հետ էր՝ թէ ուրախութեան, թէ տխրութեան միջոցին և թէ թշուառութեան ու հալածանքի ժամանակ։ Վանքերի դռներն էլ միշտ բաց էին հալածուածների ու յուսահատուածների առաջ։

Եթէ վանականների և ժողովրդի մէջ փոխադարձ յարգանքի ու սիրոյ յարաբերութիւն չլինէր, դժուար թէ մեր վանքերից շատերն այն հռչակն ունենային անցեալում և այնպիսի գործօն դեր կատարէին ազգային քաղաքակրթութեան պատմութեան մէջ։

Ահա այսպիսի պատմական-քաղաքակրթական դեր խաղացող վանքերից մէկն է և այժմ խուլ ու համարեա ամայի անտառների մէջ թաղնուած Գոշայ վանքը։ Վանքն այս անունը ստացել է տաղանդաւոր և իւր ժամանակի հոգևորականների մէջ ամենահեղինակաւոր Մխիթար վարդապետից։ Մխիթարը գոշ կամ քօսա լինելով, այդ մականունն է ստացել և այնուհետև միշտ կոչուել է Գոշ Մխիթար կամ Մխիթար Գոշ։ Մխիթար Գոշն այնպիսի անգնահատելի ծառայութիւն է արել հայ ազգի քաղաքակրթական ասպարիզում, որ նրա անունը միշտ անմոռաց կմնայ։ Այս քրտնաջան վարդապետի աշխատութիւնն է հայոց միակ դատաստանագիրքը*), որ վերջը օտար երկիրներ գաղթած հայերի համար իբրև օրէնսգիրք ծառայեց և ընդունուեց օտար պետութիւններից։

---

*) Գոշ Մխիթարի դատաստանագիրքն առաջին անգամ հրատարակեց, ընդարձակ ուսումնասիրութեամբ, ս. Էջմիածնի միաբան և իրաւաբան Բաստամեանց Վահան ծ. վարդապետը։—Մխիթարայ Գօշի դատաստանագիրք Հայոց. 1880 թ. Վաղարշապատ։

Տասներկուերորդ դարի մեր պատմագիրներից մէկի—Կիրակոս Գանձակեցու—վկայութեամբ՝ «Հռչակաւորն այն եւ մեծիմաստ գիտութեամբ» վարդապետը ծնուել է Գանձակ քաղաքում։ Ծնողները քրիստոնէական ոգով լցուած լինելով՝ Մխիթարին փոքր հասակումն իսկ տալիս են «յուսումն գրոց սրբոց». երբ հասակն առնում է՝ ձեռնադրել են տալիս կուսակրօն քահանայ կամ վարդապետ։ Մխիթարն, ինչպէս երեւում է, բնութիւնից օժտուած լինելով ձիրքերով, չէ բաւականանում իւր ստացած չնչին ուսումով, ցանկանում է աւելի խորը թափանցել սուրբ գրքի գիտութեան մէջ և բաղդի բերմամբ պատահում է Յովհաննէս Տաւուշեցի վարդապետին, որ այն ժամանակ յայտնի գիտնականներից մէկն էր համարւում։ Տաւուշեցին հաստատուն դպրոց չէ ունենում, այլ գաւառից-գաւառ շրջելով՝ քարոզում և ուսուցանում է. Մխիթարն էլ ընկերակցելով նրան՝ շրջում է և միեւնոյն ժամանակ ուսանում։ Որ Տաւուշեցին որոշ հեղինակութիւն է ունեցել իւր ժամանակակիցների համար, ապացուցանում է պատմագրի առաջ բերած հետեւեալ փաստը. այն ժամանակ մեծ պասի միջոցին շատ տեղ՝ շաբաթ և կիրակի օրերը ուտիք են համարել և պաս չեն պահելիս եղել. Տաւուշեցին կարգադրել է, որ շաբաթ և կիրակի օրերն էլ պէտք է պաս պահուի. այս կարգադրութիւնն ընդունուել և իրագործուել է։—Կիրակոս Գանձակեցի։

Մխիթարը Տաւուշեցուց ստացած ուսումով էլ չբաւականանալով, գնում է «յԱրեւմուտս կոյս յաշխարհն, որ կոչի Սեւ լեառն» և աշակերտում է այնտեղի նշանաւոր ուսուցիչներին ու գնում Կարին։ Կարին քաղաքում Գոշը հանդիպում է Լօռուայ իշխաններից մէկին, Քուրթ կամ Քուրդ անունով հայ բարեպաշտ իշխանին, որ վրաց թագաւորից նեղանալով՝ գնացել կամ գուցէ և փախել էր Կարին։ Մխիթարը բարեկամանում է նրա հետ—այս բարեկամութիւնը վերջը պէտք է գալիս Գոշին։—Մխիթարը երբ Կարին քաղաքից վերադառնում է հայրենիք, մեծ հռչակ է ստանում և բազմաթիւ աշակերտների ուսուցանում։ Ուսուցչական գործունէութեան այդ ամենաեռանդուն միջոցին Գոշը ստիպուած է լինում թողնել բոլորը—Կիրակոս պատմագրի ասելով «նեղեալ ի Տաճկաց»—և գնալ Խաչէն, Հաթերքի Վախթանկ իշխանի մօտ ապաւինել։ Վախթանկ իշխանն ու իւր եղբայրները մի քանի տարի պատուով հիւրասիրում են ուսուցիչ-վարդապետին։ Այս միջոցին Գոշի բարեկամ Քուրթ իշխանը վերադառնում է Կարինից իւր կալուածքը, Կայենոյ գաւառը։ Քուրթ իշխանի Կարին գնալն ու վերադառնալը, ինչպէս երեւում է Կիրակոս պատմագրի մութ խօսքերից, պէտք է կապ ունեցած լինի Լօռուայ այդ աւատական իշխանի Վրաց ար-

քայական տան հետ ունեցած ընդհարումների հետ։ Երբ Թամար թագուհին տիրում է Վրաց արքայական գահին, վերադարձած Քուրդ իշխանին մեծ պատիւներ է տալիս և յետ է դարձնում «զհայրենի տեղիսն, և այլս յոլովս»—Գոշը լսելով իւր բարեկամ Քուրդ իշխանի վերադարձը, շտապում է գնալ նրա մօտ և մեծ յարգանքներով ընդունւում է նրանից։ Այնուհետև Մխիթարը բնակութիւն է հաստատում իշխանի կալուածքում գտնուող Գետիկ վանքում, որ շինուած էր Աղստև գետի աջ ափին. այդ միջոցին Գետիկ վանքի վանահայր առաջնորդն է լինում Սարկաւագ կոչուած վարդապետը, որ Գոշի նախկին աշակերտներիցն էր և մեծ յարգանքով ու պատուով էր վերաբերւում իւր ուսուցչին «և ինքն սպասաւորէր նմա»—Կիրակոս պատմ. էջ 122։

Սակայն այստեղ էլ երկար ժամանակ չկարողացաւ մնալ Գոշը, որովհետև սաստիկ երկրաշարժից բազմաթիւ աւերումներ եղան և ի միջի այլոց կործանուեց նոյնպէս Գետիկ վանքը։ Վանքի մօտ եղած գիւղի բնակիչները կամենում են ցրուել զանազան տեղեր, բայց Գոշ Մխիթարը չէ թոյլ տալիս և նոցա հետ միասին ներկայանալով Իւանէ մեծ իշխանին, Վրաց զօրավար Զաքարէի եղբօրը, թոյլտուութիւն է խնդրում մի ուրիշ տեղ նոր վանք շինելու։ Իւանէն յարգելով հռչակաւոր վարդապետի խնդիրը, թոյլ է տալիս, որ յարմար տեղ որոնեն և նոր վանք շինեն։ Իւանէ և Զաքարէ հայ իշխանները, որ Քուրդ Կայենոյ իշխանի քրոջ որդիքն էին, այն ժամանակուայ ամենազօրեղ անձինքն էին Լօռուայ շրջանում։ Երկու եղբայրներն էլ իրանց խելացիութեամբ, քաջութեամբ ու բարեպաշտութեամբ Վրաց արքունիքում մեծ դեր էին խաղում և սրանց իշխանութեան ժամանակ ծաղկեցան Լօռուայ յայտնի վանքերը։

Գոշը վանքի համար յարմար տեղ որոնելով հասնում է Տանձուտայ ձորը և այստեղ է որոշում նոր վանք կառուցանել. «Եւ նորա շրջեալ գտին տեղի մի բարեվայելուչ և զոգաձև առ ստորոտս երկուց լերանցն՝ որ կայ ի գլխոյ նորա, զոր անուանէին զտեղին Տանձուտայ ձոր. և էր ի նմա գիւղ. և ձորակ մի փոքրագոյն անցանէր ընդ մէջ նորա. և միւս ևս յորդագոյն յաջմէ կողմանէ, տեղի փայտաւէտ և ջրաւէտ. անդ համարեցան, թէ պատշաճ իցէ զետեղել» *)։

Վանքի կառուցման տեղը որոշելով և Իւանէ իշխանի համաձայնութիւնը ստանալուց յետոյ Գոշը ձեռնարկում է եկեղեցու շինութեանը. սկզբում շինել է տալիս մի գեղեցկաշէն փայտակերտ

---

*) Կիրակոս Գանձակեցի. էջ. 123.

եկեղեցի և օծելով՝ անուանում է սբ. Գրիգոր Լուսաւորչի եկեղեցի։ Օծմանը ներկայ է լինում և Խաչատուր Տարօնացի վարդապետը, Հաղարծին վանքի առաջնորդը, որ հռչակուած էր իբրև երաժշտութեան արուեստի իմացող *)։

Գոշը փայտաշէն եկեղեցուց յետոյ կառուցեց մի փոքր եկեղեցի ևս սբ. Յովհաննէս Կարապետի անունով և ապա հիմնարկեց այն մեծափառ, կոփածոյ քարերից, գեղեցկաշէն գմբէթով եկեղեցին, որ սբ. Աստուածածնի անունն է կրում հայոց ՈԽ—640 կամ Քրիստոսի 1191-թուին։ Սուրբ Աստուածածնայ եկեղեցու աւարտումը և օծումը տեղի ունեցաւ հինգ տարուց յետոյ մեծ հանդիսով ու շքով՝ Հաղբատի առաջնորդ Յովհաննէս եպիսկոպոսի ներկայութեամբ։ Այդպիսի կարճ միջոցում մի այսպիսի փառաշէն եկեղեցի կառուցանելը հարկաւ հեշտ չէր և չէր էլ կարող գլուխ գալ՝ առանց իշխանների օժանդակութեան. Մխիթարին օգնում են իւր բարեկամ Քուրթ իշխանի որդիքը՝ Դաւիթն ու Սադունը, Խաչէնի Վախթանգ իշխանն ու իւր եղբայրները—Գրիգոր, Գրիգորիս, Խոյադան և Վասակ,—իսկ Քուրթ իշխանի աղջիկ Արզու խաթունը, վերոյիշեալ Վախթանգի կինը, իւր դուստրների հետ միասին մի այնպիսի հրաշալի վարագոյր է պատրաստում, նորակառոյց եկեղեցու համար, որ մեր պատմագիրը նկարագրելով՝ խօսք չի գտնում իւր հիացումն արտայայտելու համար. «Արար և վարագոյր գեղեցիկ՝ գունովք իւրովք՝ ծածկոյթ սուրբ խորանին, զարմանալի տեսողաց, ի մազոյ այծից կակղագունեաց, ներկեալ պէսպէս և գանագան, գործ քանդակակերպ և նկարեալ պատկերօք, ճշգրտագոյն հանուածովք. անօրինականօք Փրկչին և այլ սրբոց, որ հիացուցանէր զտեսողսն։ Եւ որք տեսանէին, օրհնութիւն տային Աստուծոյ, որ ետ կանանց իմաստութիւն ստայնանկութեան և հանճար նկարակերտութեան...»։—էջ 125—126։—Ահա մի փոքրիկ նմուշ 12 երորդ դարի հայ կանանց ձեռագործի հմտութեան։ Ապա պատմա-

*) Այս երաժշտագէտ վարդապետի հեղինակութիւնն է «Խորհուրդ խորին» սքանչելի երգը, որ երգւում է պատարագի սկզբում,—պատարագչի զգեստաւորուելու միջոցին—և որի տուների սկզբնատառերը կազմում են «Խաչատուր» անունը։—Խաչատուր Տարօնացին է—ըստ Կիրակոս պատմագրի—ձայնանիշների կամ խազի ներմուծողը Հայաստանում. «Սա եբեր գլխովն ի կողմանս յարևելից, զանմարմին եղանակն ի մարմին ածել, զորաբեկալն յիմաստնոց, որ ցայն ժամանակս չէ՛ էր սփռեալ ընդ աշխարհս»։—էջ 123։ Նա շատերին սովորեցնելով ձայնանիշների արուեստը՝ մեծ հռչակ է վայելում և նոյն իսկ վրաց Գիօրգի թագաւորը,—Թամար թագուհու հայրը—մեծ պատիւներ է տալիս նրան և նրա վանքին շնորհում է «Արտաձորն» և «Ցանձուտ» գիւղերը և «այգի մի ի մէջնաշէնին», իբրև յաւիտենական սեպհականութիւն։ Այս արուեստագէտ նշանաւոր վարդապետը թաղուած է Հաղարծին վանքում, եկեղեցու արևմտեան կողմը։

գիրն աւելացնում է, որ նոյն իշխանազուն տիկինը նոյնպիսի նըրբանկար վարագոյրներ պատրաստել է նաև Հաղբատի, Մակարայ վանքի և Դատի վանաց եկեղեցիների համար։

Եկեղեցու շէնքն աւարտելուց յետոյ՝ Գոշը շինել է տալիս նաև նրա «գեղազարդ և կոփածոյ վիմօք» գաւիթը։

Մխիթարը կործանուած Գետիկ վանքի յիշատակը պահելու համար իւր կառուցած վանքն անուանում է «Նոր Գետիկ», բայց նրա երախտագէտ հայրենակիցները նոր վանքի գոյութիւնը կապեցին կառուցանողի անուան հետ և կոչեցին «Գոշավանք»։ Նորակառոյց վանքն ապահով դրութեան մէջ դնելու համար Զաքարէ և Իւանէ սպասալարներն ընծայում են «սահման ջրադարձովք լեռնէ ի լեառն, և բով մի յԱբասաձոր և զՋօրոձոր ի նահանգին Բջնոյ, և զԱշաւա ի գլուխ վանացն»—էջ 126։—Բալքի դրանից «Տղրկածովի» *) մօտ իշխանները մի նոր գիւղ հիմնեցին ու ծովի կամ լճի անունով «Տղրկածով» կոչելով նուիրեցին վանքին. վանքից մի փոքր ցած հիմնեցին դարձեալ մի գիւղ և «Ուռեկանջ» կոչելով վանքին ընծայեցին։

Այս ընծայաբերութեամբ խրախուսուած՝ Մխիթար վարդապետը դարձեալ կառուցանում է այլ մատուռներ սբ. Առաքեալների և սբ. Հռիփսիմէի անուններով և որովհետև ինքն անապատ տեղեր էր սիրում, իրեն բնակութեան համար տուն է շինում վանքից դուրս և կողքին մի փայտակերտ, փոքրիկ եկեղեցի է շինում սբ. Հոգու անունով։ Իսկ ծերութեան ժամանակ վանքի աջ կողմը, յատուկ իւր շիրմի համար քարուկիրով փոքրիկ եկեղեցի է կառուցանում՝ Համբարձման անունով։

Այս հոյակապ վանքը կառուցանելուց յետոյ հարկաւ Գոշի անունն աւելի ևս հռչակւում է և ամեն կողմից գալիս են նրան աշակերտելու. մինչև անգամ շատ ուսուցիչներ թագցնելով իրենց կոչումը՝ գալիս աշակերտում են նրան և կրկին ուսուցչութեան իրաւունք ստանում։ Մխիթարի աշակերտներից ամենից աւելի նշանաւոր են հանդիսանում Թորոս և Վանական կոչուած վարդապետները. Վանականի մօտ է ուսել և Կիրակոս Գանձակեցի պատմագիրը, որ երախտագիտական զգացմունքով միշտ մեծ համակրանքով է խօսում իւր նախկին ուսուցչի մասին։ Թէ որքան մեծ հեղինակութիւն էր վայելում Մխիթար Գոշն հայ եկեղեցական և աշխարհական շրջաններում, յայտնի է այն իրողութիւնից, որ երբ Զաքարէ սպասալարի հրամանով Անի քաղաքում եկեղեցական

*) «Տղրկածով» անունը տուեցել է այս փոքրիկ, բայց շատ խորը լճին՝ «քանզի բազումք կային ի նա մօրաւէք և տղմաւէք տզրուկն»։

ժողով գումարուեց, ժողովականները ոչ մի կերպ գործի չձեռնարկեցին առանց Մխիթարի։ Մխիթարը իւր ծերութիւնը պատճառաբանելով Անի չէր եկել, այլ Զաքարէին թուղթ էր գրել, որ ինքը համաձայն կլինի մեծամասնութեան վճռին։ Ժողովականները թուղթ են գրում Գոշին, որ ամեն նեղութիւն կրելով անպատճառ գայ Անի և աւելացնում են, որ եթէ ճանապարհին վախճանուի, սուրբ հայրապետների կարգը կդասեն նրան։ Զանց առնելով պատմել այստեղ այս ժողովի զբաղմունքների ելքը և Գոշի խաղացած դերը, պէտք է աւելացնենք, որ յետագայում Մխիթար վարդապետի յիշատակը կապուեց մի աւելի մեծ գործի հետ. ինչպէս հատուածիս սկզբումն էլ յիշեցի, Մխիթար Գոշը իւր ժամանակակից մարդկանցից գերազանց ծառայութիւն է արել հայ գրականութեանն ու քաղաքակրթութեան պատմութեանը՝ տալով մեզ իւր դատաստանագիրքը, այսինքն հայ ժողովրդի եկեղեցական և աշխարհիկ աւանդական օրէնսդրութեան ժողովածուն։ Դատաստանագիրքը թէև զուտ իրաւաբանական-գիտնական և համակարգուած գործ չէ, սակայն այնուամենայնիւ մեծ արժէք ունի մեզ համար, որովհետև այդ խնդրին վերաբերեալ ուրիշ ինքնուրոյն ոչինչ չունենք։ Լեհաստանում ապրող հայ գաղթականները թարգմանեցին Գոշի դատաստանագիրքը լատիներէն ու լեհերէն, թոյլտւութիւն ստացան Սիգիզմունդ թագաւորից այդ օրէնքների հիման վրայ կառավարելու իրենց դատաստանական գործերը և այդպիսով տիրապետող երկրի օրէնսդրութիւնից անկախ, ինքնուրոյն ազգային օրէնսդրութիւն ունեցան իրենց համար։

1518 թուին դատաստանական իրաւասութեան մասին յարուցած վիճաբանութեան ժամանակ Սիգիզմունդ Ա. Լեհաստանի թագաւորը հրամայում է հայերին, որ թարգմանեն իրենց օրէնքները ռուսիներէն կամ լատիներէն ու ներկայացնեն իրեն պետական սէյմի ժամանակ։ 1519 թ. ապրիլին լեհահայերը ներկայացնում են թագաւորին Կրակով քաղաքում իրենց օրէնքների լատիներէն թարգմանութիւնը։ Թագաւորն իւր խորհրդականների հետ մի քանի թեթև փոփոխութիւններ անելով՝ հաստատում է հայերի օրէնսգիրքը նոյն թուին, հոգեգալստեան օրը, մի հրովարտակով, որի մէջ գրում է նաև հետևեալը. շատ կարևոր էր, որ հայերէն գրուած և այդպիսով միմիայն հայերին հասկանալի օրէնքները լատիներէն թարգմանուէին, որպէսզի նոքա նոյնպէս հասկանալի լինէին քաղաքապետին և այն մարդկանց, որոնք վէճեր կունենան հայերի հետ։

Ըստ Ֆերդինանդ Բիշօֆի *) Սիգիզմունդ թագաւորի հաստա-

*) «Das alte Recht Armenier in Lemberg, von Dr. Ferdinand Bischoff. Wien. 1862.»

տած հայոց օրէնսգիրքը բաղկացած է տասը գլխից և հարիւր քըսանուչորս յօդուածներից. յօդուածները շատ երկար չեն, իսկ մի քանիսը շատ կարճ են։ Մեծ մասը վերաբերում է մասնաւոր և պատժական օրէնքներին, մի քանիսը դատաստանականին, միւսները ոստիկանականին։ Յօդուածների մեծագոյն մասը վերցրած է հին և նոր կտակարաններից, իսկ միւսները պարունակում են իրենց մէջ առանձին հայեացքներ կեանքի ու բարքի մասին. յօդուածներից մի քանիսը նման են ուրիշ ազգերի, մանաւանդ գերմանական օրէնքներին։ Առաջին վեց գլուխները վերաբերում են հայոց թագաւորներին, իսկ միւսներից մի քանիսը պարունակում են շատ հին օրէնքներ։ Որ այս օրէնսգիրքը գործածական էր բոլոր լեհահայերի մէջ, ապացոյց է այն հանգամանքը, որ նրա բազմաթիւ ձեռագիր օրինակները ցրուած են ամբողջ Լեհաստանում։ Շքեղ զարդարուած և նոյն իսկ Սիգիզմունդ թագաւորի պատրաստած, ընագիրը հայերէն ու լատիներէն լեզուով գտնւում է Տիտոս Ձիալինսկի կոմսի մօտ, ինչպէս ասում է Վենցէնց Պօլ հռչակաւոր բանաստեղծը։ Երկու լատիներէն ձեռագրեր կան Լեմբերգում։

1601 թ. հայոց աւագանիների անօրինութեամբ լեհահայոց օրէնսգիրքը թարգմանուեց նաև լեհերէն *)։

Մխիթար Գօշի դատաստանագիրքը բաղկացած է երեք գլխաւոր մասերից.

Ա. Նախադրութիւն
Բ. Եկեղեցական կանոններ
Գ. Աշխարհական օրէնքներ

Նախադրութեան մէջ Գօշը յիշում է, որ հայերը նախատինքների էին արժանանում՝ սեպհական օրէնսդրութիւն կամ դատաստանագիրք չունենալու համար. այդ պատճառով անձ ինքը միտք է յղանում կազմել մի դատաստանագիրք՝ բայց լաւ ըմբռնելով այդպիսի մի գործի դժուարութիւնները՝ սկզբում չէ վստահանում սկսել գործը։ Նախադրութեան երկրորդ յօդուածում Մխիթարը տասներկու խորհրդածութիւններով բացատրում է այն հանգամանքները, որոնց ստիպմամբ ինքը ձեռնարկել է յօրինելու իւր դատաստանագիրքը։ Այդ բացատրութիւններից երևում է, որ Գօշը իւր մտադրութիւնը յայտնում է Աղուանից Ստեփաննոս բ. կաթողիկոսին. այնուհետև այդ բարձրաստիճան հոգևորականն այլ ևս չէ դադարում Գօշին խնդրելուց և յորդորելուց, որ անպատճառ իրա-

*) Տես. Վահան ծ. վարդ. Բաստամեան. Մխիթարայ Գօշի դատաստանագիրք հայոց։

*գործէ իր մտադրութիւնը. Մխիթարը սկզբում դժուարանում է զիջանել՝ առարկելով իր անպատրաստութիւնն այդ գործի համար, բայց վերջապէս յանձն է առնում՝ համարելով այդ իբրև մի հրաման հայրապետի* [1]*։ Այդ պատճառով Նախադրութեան երրորդ հատուածը Գոշն սկսում է, ըստ նախնեաց սովորութեան, դիմելով Սանահինու կաթողիկոսին* [2]*։*

*Նախադրութեան տասնումէկերորդ հատուածում, որ «Յիշատակարան սակաւուց» վերնագիրն է կրում, Գոշը պարզ ասում է, որ դատաստանագիրքն սկսել է և Նախադրութիւնը վերջացրել հայոց ՈԼԳ*—633 *և* 1184 *փրկչական—թուին. աւելացնելով, որ ամբողջ գործի վերջացնելն իրենից չէ կախուած* [3]*։*

*Յայտնի չէ թէ երբ աւարտեց Գոշը դատաստանագիրքը. իսկ հայր Բաստամեանի կարծիքով աւարտուած չէ գործը և Մխիթարի մահուամբ* (1213 *թուին*) *թերի է մնացել։*

*Թէ որտեղ է գրուել դատաստանագիրքը՝ մասամբ միայն որոշ է, որովհետև Նախադրութեան վերաբերմամբ ինքը Գոշը յայտնում է, որ գրել է Հոռոմաշէն վանքում* [4]*). բայց թէ շարունակութիւնը երբ և որտեղ է գրուել՝ անորոշ է. պէտք է ենթադրել, որ Նոր-Գետիկի շէնքը վերջացնելուց յետոյ Գոշը ի միջի այլոց զբաղուած էր այդտեղ և դատաստանագրքով։*

*Թէ ինչպիսի հանգամանքներումն էին գտնւում այդ ժամանակաշրջանում հայ նշանաւոր հեղինակները ու թէ աւերածու-*

---

[1]) «Բայց եղև պատճառ գրելոյ զսա ի հարկելոյ զմեզ Տեառն Ստեփաննոսի Աղուանից կաթողիկոսի միանգամ և երկիցս. և ես պատճառեցի զանձինս տկարութիւն և զաղխտութիւն։ Իսկ իբրև առաւել սաստկեաց, յանձն առի մոռացեալ զիմ տկարութիւնս, գիտելով թէ պարտ է հնազանդ լինել հոգևոր հրամանին»։ Տես, Դատաստանագիրք. էջ 17.։

[2]) «Աղաչեմ զքեզ, պատուական գլուխ եկեղեցեաց տանս Աղուանից, մի վշտացար և թեթև գործ համարիր զհոգևոր հարկս, զոր եդիր։ Քանզի պարտ է մեզ ցուցանել քեզ սակաւուք թէ զինչ է զօրութիւն գրոցս, զոր ձեռնարկեմք. զի գիրս դատաստանի զնմանութիւն կանոնաց ունի, զոր պարտ է մեզ յարմարել զսա և զկանոնսն զի ցուցցի նմանութիւնն»։ Տես. նոյնը էջ 18.։

[3]) «Բայց ձեռնարկութիւն մեզ յայսմ իրողութիւն եղև ի թուականութեանս հայոց ՈԼԳ և շրջանին երթալոյ ի բաց ՃՁ. որ կոչի փոքր...։ Բայց գծագրութիւն յիշատակիս ի Նախադրութիւնս գրոցս դատաստանի եղև, զի կատարած սորա ի ձեռն մեր միանգամայն ոչ է, որպէս ասացեալ է կանխաւ զպատճառն։ Եւ արդ՝ որքան է կար ի գործ անկանիմք հիւսել զկնի գիրս դատաստանիս»։ Տես. նոյնը, էջ 69—74.։

[4]) «...Յաշխարհիս Աղուանյ. ի Նահանգիս որ կոչի մայրաքաղաքին Գանձակ, յանապատս և եղբայրանոցս անուանեալ Դաւնոյ, սկզբնաւորեալ ի լեռնակողմն մենաստանին կոչեցելոյ Հոռոմաշէն, ընդ հովանեաւ սրբոց եկեղեցեաց կուսաստանացն յիշեցելոց...»։ Տես. նոյնը, էջ 74.։

թիւնն ու ամայութիւնն որ աստիճանին էին հասել, պարզ երեւում է այն բանից, որ Գօշը հազարաւոր տարիներ գոյութիւն ունեցող ազգի միակ դատաստանագիրքը գրելու ժամանակ՝ գրելու պալագաների պակասութիւն է զգում [1])։

Մխիթար Գօշի դատաստանագիրքը գործնական մեծ նշանակութիւն է ունեցել՝ թէ Հայաստանում և թէ Հայաստանից դուրս այն երկրներում, ուր հայերն ամբողջ հասարակութիւն են կազմել. արդէն յիշեցինք դատաստանագրքի լատիներէն ու լեհերէն թարգմանութիւնը, աւելացնենք որ հայոց այդ օրէնսդրական գիրքը թարգմանուած է եղել նաև թաթարերէն՝ Ղրիմի գաղթական հայերի գործածութեան համար։ Նոյն դատաստանագիրքը Սմբատ Սպարապետի թարգմանութեամբ գործ է դրուել և Կիլիկիայում՝ իբրև ազգային օրէնսգիրք։

Գօշի դատաստանագիրքը մտել է նաև Վրաստանի պետական օրէնսդրութեան մէջ. Քարթալինիայի թագաւոր Վախթանգ Զ. տասնութերորդ դարի սկզբներում վրացերէն լեզուով մի օրէնսգիրք է յօրինում, որ կոչւում է «Սամարթլիս ծիգնի Վախթանգ Մէփիսա»—դատաստանագիրք Վախթանգ թագաւորի։—Այս գիրքը բաղկացած է 7 մասից և երրորդ մասը կազմուած է հայոց օրէնքներից, որ վերցրած են Գօշի դատաստանագրքից [2])։

Վախթանգի դատաստանագիրքը, մանաւանդ քաղաքացիական իրաւունքների մասը, գործ էր դրւում Վրաստանում թէ վրաց թագաւորների ժամանակ և թէ ռուսաց տիրապետութեան միջոցին բաւական երկար ժամանակ. Աղէքսանդր Ա. կայսեր հրովարտակով հրամայուած էր, որ Վրաստանի արքունի դատարաններում քաղաքացիական գործերի համար օրէնսգիրք համարուի Վախթանգի դատաստանագիրքը. նոյնը 1835 թ. Նիկողայոս կայսեր հրամանով հրատարակուած ընդհանուր օրէնսդրութեան (СВОДЪ ЗАКОНОВЪ) մէջ մտաւ. այսպիսով ուրեմն Գօշի դատաստանագրքի մի մասը միջնորդաբար մտնում է նաև ռուսաց օրէնսդրութեան մէջ [3])։

Գօշը խորին ծերութեան հասնելով և զգալով արդէն իւր անկարողութիւնը, շուրջն է հաւաքում վանքի միաբանութիւնը և իւր աշակերտներին, օրհնում է նրանց և վերջիններից մէկին, որի անունը Մարտիրոս էր, իւր փոխարէն՝ վանքի առաջնորդ է կար-

---

[1]) «...Զպակասութիւն գործոց ցծագրութեանց, և զաղքատութիւն մատենից յորոց զնիւթս հաւաքել ի դէպ էր բանից...»։ Տես. նոյնը էջ 69.։

[2]) Տես. Վահան ծ. վ. Բաստամեան. յառաջաբանութիւն էջ 104—105.

[3]) Տես. նոյնը, էջ 105.

գում: Այնուհետև մի կտակ է գրում Իվանէ սպասալարի անունով և նրա հովանաւորութեանը յանձնելով վանքն ու միաբանութիւնը, խաղաղ վախճանվում է հայոց ՈԿԲ—662 և փրկչական 1213—թուին՝ «ալեօրեալ և լի աւուրբք»։ Թէպէտ ծննդեան տարին անյայտ լինելով՝ չգիտենք թէ քանի տարի ապրեց տաղանդաւոր Գոշը, բայց պատմագրի վերոյիշեալ խօսքերից պարզ երևում է, որ առ սակաւն ութսուն տարի ապրած պէտք է լինի։

Միաբանակիցներն ու ժողովուրդը մեծ յարգանքներով գերեզման են իջեցնում իրենց երախտաւոր ուսուցչի և վանքի հիմնադրի աճիւնն այն փոքր եկեղեցու դրան առաջը, որ գտնւում էր վանքի արևմտեան կողմը։ Թէ որչափ մեծ հեղինակութիւն և սրբի անուն էր վաստակել Գոշը ժողովրդի աչքում, երևում է այն հանգամանքից, որ պատմագրի ասելով, նրա գերեզմանի հողը տանում էին զանազան հիւանդութիւններ բժշկելու համար։ Պատմագիրը մի ուրիշ միջադէպ էլ պատմում է, որ նոյնպէս հետևանք է Գոշի ունեցած հռչակին. մի անգամ Գոշավանքի պաշտօնեաները դրաստներով գինի են տանում վանքը. ճանապարհին պատահում է դրանց Իւանէ սպասալարի Բասիլիոս անունով վրացի գործակալը և ուժով ցանկանում է գինու մի մասը խլել նրանցից. պաշտօնեաները թոյլ չտալով՝ յայտնում են, որ իրանք Գոշի մարդիկն են. վրացին յանդգնում է հայհոյել Գոշին և հենց այդ միջոցին լեզուն կապւելով՝ համրանում է. շատ օրեր մնում է նա համր մինչև որ զղջալով ներողութիւն է խնդրում և ապա թէ կրկին կարողանում է խօսել։

Մի բան զարմանալի է. Կիրակոս Գանձակեցին այդքան մանրամասն գրելով Գոշի կենսագրութիւնը և նոյն իսկ թուելով նրա գրաւոր աշխատութիւնները, չէ յիշում «Դատաստանագիրքը» և «առակները»։ Երևի պատմագիրն այս աշխատութիւնները հոգևոր չէ համարում և այդ պատճառով արժան չէ համարում յիշատակել. «Եւ եթող նա յիշատակ և արձան գերեզմանի գիրս մատեանս յօգուտ ուսումնասիրաց՝ համառօտ մարգարէութեանն Երեմիայի գեղեցկագիր կարգօք, և սուղ ինչ կանոնս վասն սպասաւորելոյ մարմնոյ և արեան Տեառն, թէ որպէս պատշաճ իցէ, կամ որպիսի կարգօք. և գիրք մի ողբոց ի վերայ բնութեանս՝ ի դիմաց Ադամայ առ որդիս նորա, և ի դիմաց Եւայի առ դստերս նորա. և գիրք մի յայտարարութիւն ուղղափառութեան հաւատոյ ընդդէմ ամենայն հերձուածողաց, ի խնդրոյ մեծ զօրավարին Զաքարէի և եղբօր իւրոյ, և այլ թուղթս խրատականս. և եղև վախճան նորա ի ՈԿԲ թուականին». էջ 129 [1])

---

[1]) Հանգուցեալ Վահան Բաստամեան վարդապետը իւր շնորհալի հետազօ-

Մեծանուն Գոշ Մխիթարի մահից յետոյ էլ Նոր Գետիկը կամ Գոշավանքը պահպանեց իւր հռչակը իբրև դպրոց և բազմաթիւ միաբաններ ունեցաւ. ի միջի այլոց Կիրակոս Գանձակեցի պատմագիրն էլ իւր ուսումն այս վանական դպրոցումն է ստանում. «Եւ բազում եղբարք ժողովեցան վասն հռչականուն տեղւոյն, և բազմաց եղև տեղի սննդեան և ուսման. որ եւ մեք սնեալ եւ ուսեալ եղաք ի նոյն վանս»—էջ 129—130։

Գոշի կարգած առաջնորդ Մարտիրոս վարդապետն եւ շինարար մարդ լինելով՝ մի ժամատուն է կառուցանում անտաշ քարով ու կրով, հաստ որմերով և փայտակերտ վերնայարկով. շինում է դարձեալ մի գրատուն «գեղեցկաշէն յարկօք»։ Ձեռնարկում է նոյնպէս մի նոր եկեղեցու կառուցման՝ հինգ խորաններով, մաքուր տաշած քարով, գմբէթով և գեղեցկաշէն. բայց երբ տաճարը միայն կիսով չափ էր պատրաստ, Խորասանի Սուլթան Ջալալադինի արշաւանքների շնորհիւ կիսատ է մնում և երկար տարիներից յետոյ միայն Գրիգոր Կապալեցու շնորհիւ աւարտւում է ՈՂ—690 հայոց և 1241 փրկչական թուին։

Այնուհետև Գրիգոր Տղայ իշխանը, որ Իւանէ սպասալարի մօտ էր սնուել, փոխադրուելով Գետիկ վանքը՝ ուզում է այնտեղ թաղուել և գնելով Վաչխէ անունով գիւղը, որ Աղստեւի մօտ էր գտնւում, ընծայում է վանքին։ Սա եւ շինել է տալիս մի «հրաշազան եկեղեցի» երեք խորանով, եկեղեցու գաւթի մօտ «շինուած զարմանակերտ». Նորակառոյց եկեղեցին կոչուեց սբ. Գրիգորի անունով։ Դարձեալ ուրիշ շատ շէնքեր են կառուցւում և հետզհետէ շատանում են քահանաները և «մանկունք ուսումնականք»։ Մարտիրոս վարդապետը 40 տարի առաջնորդութեան պաշտօնը վարելուց և հիմնադրի յիշատակն աւելի փառաւորելուց յետոյ՝ ինքնակամ հրաժարւում է այդ պաշտօնից.—«Եթող կամաւորաբար»։ Այնուհետև Կիրակոս պատմագիրը յիշում է մի շարք առաջնորդների անունները՝ առանց նրանց գործերը յիշատակելու. և վերջացնում է իւր պատմութիւնը Գետիկ վանքի մասին։

Յետագայ հատուածներից մէկում նա, երբ Կիրակոս Գանձակեցին պատմում է յայտնի վանական վարդապետի և իւր գերի տանուիլը թաթարաց Մօլար Նուին զօրավարի ձեռքով՝ նկարագրելով իւր փախչելով ազատուիլը, աւելացնում է, որ ինքը գնում

---

թութեան մէջ առաջ բերելով Գոշի աշխատութեանց ցանկը Կիրակոս պատմագրից, յիշում է նաև «Առակք» ու «Դատաստանագիրքը» և ծանօթութեան մէջ աւելացնում է՝ «Առակքը» չեն յիշուած Կիրակոսի ցանկի մէջ. իսկ դատաստանագրքի մասին ոչինչ չէ նկատում, որքան Կիրակոսի ուրիշ ձեռագրերում յիշուած է դատաստանագիրքը։

է իւր մնացած տեղը, Գետիկ վանքը, որ աւերեալ էր ի նոցանէ, և այրեալ շինուածքն որ ի նմա։—Էջ 148։

Բաւականանալով Նոր Գետիկ կամ Գոշավանքին և նրա նշանաւոր հիմնադրին վերաբերեալ պատմական այս տեղեկութիւններով, տեսնենք թէ այժմ ինչ դրութեան մէջ է գտնւում այդ ուսումնավայրն ու սրբավայրը։

Բ

## ՆԿԱՐԱԳՐԱԿԱՆ

Դիլիջան աւանից դէպի արևելք, մօտ 14—15 վերստ հեռաւորութեամբ, անտառապատ լեռների Ծանծուտ կոչուած ձորի մէջ, 1250 մետր ծովի մակերեւոյթից բարձր, տարածուած է մի հայաբնակ աղքատիկ գիւղ։ Բնութեան այս գեղեցիկ վայրում ապրում են երեսուն տուն չքաւոր և համարեա թէ կիսավայրենի բնակիչներ՝ իրենց ապրուստը հայթայթելով սակաւաթիւ վարելահողերի նախապետական ձևի մշակմամբ և որսորդութեամբ։

Դեռ գիւղը չմտած՝ այցելուի ուշադրութիւնը գրաւում են մի խումբ տաճարներ, որոնցից մի քանիսը դեռ կանգուն և փառաշէն են, իսկ միւսները կիսաւեր և կիսակործան։ Իսկոյն աչքի է ընկնում հակադրութիւնը. սրբատաշ քարից շինուած հոյակապ տաճարներ և հազիւ գետնի մակերեւոյթին երևացող աղքատիկ խրճիթներ. արդեօք ում համար են այս գեղաքանդակ եկեղեցիները. դրանք ամայի են երևում. ոչ երկիւղած աղօթողների խմբեր կան և ոչ սևազգեստ կրօնաւորների շարքեր։ Ճարտարարուեստ կաթուղիկէների նեղ ու երկարաձև լուսամուտներից ծիծեռնակներն ու ճնճղուկներն են միայն ներս ու դուրս թռչում և իրանց ողբախառն երգով շրջակայ խաղաղութիւնը վրդովում...

Այդպէս չէր եօթը հարիւր տարի առաջ, երբ կեանքը եռում էր բնութեան այս գեղածիծաղ վայրում. երբ հեղինակաւոր և առաքինի ուսուցչի շուրջը հաւաքւում էին Հայաստանի ամեն կողմերից եկած ուսումնատենչ երիտասարդները և ոգևորութեամբ լսում նրա ազդու դասախօսութիւնները։ Աստուածաբան և իրաւաբան Մխիթար Գոշն էր այն հմուտ ուսուցիչը. Նոր Գետիկ վանքն է այս եկեղեցիների խումբը։ Այժմ թէ վանքը և թէ գիւղը իրենց հիմնադրի անունով Գոշ են կոչւում։ Գոշ Մխիթարի յիշատակն յաւերժացնող այս վանքում վանահայր անգամ չկայ, որ հոգացողութեամբ պահպանէ սրբավայրերը. ամեն բան թողնուած է գիւղական տգէտ քահանայի խնամքին, որ հարկաւ ոչինչ տեղեկու-

թիւն չունի ոչ վանքի անցեալի և ոչ էլ նրա հանճարեղ հիմնադրի մասին։ Նրա թոյլտուութեամբ մի ինչ որ «րէզ» համարեա տաճարի տակ բօստան է ցանել...։ Այն սրբավայրում, որ դեռ եօթ հարիւր տարի առաջ գիտութեան և ուսման սերմերն էին ցանում, այժմ բօստան է ցանում...

Սակայն թողնենք մեր տխուր խորհրդածութիւնները և տեսնենք թէ ինչ է մնացել այժմ[1] Նոր Գետիկում Կիրակոս պատմագրի յիշած տասներեք մեծ ու փոքր տաճարներից։

## I

## ԳԱՒԻԹ

Սկսենք գաւթից։ Սրբատաշ քարից շինուած այս հոյակապ շէնքը ներսից անխախտ է. արտաքուստ՝ թափուած են միայն կըտուրի սալ քարերը։ Երկու մուտք ունի. մէկն արևմտեան, միւսը հիւսիսային կողմից. արևմտեանը կամարակապ է, գոյնզգոյն քարերով։ Գաւթի կամարակապ տանիքն ու գմբէթը կանգնած են չորս սիւների և ութը կիսասիւների վրայ։ Յատակը ծածկուած է սալաքարով։ Արևելեան որմի մէջ, աջ և ձախ կողմից, կան երկյարկ խորաններ. այս որմին կցուած են նոյնպէս բեմի նմանութիւն ունեցող և սրբատաշ քարից շինուած փոքրիկ պատուանդաններ, որոնց վրայ քանդակուած են փոքրիկ սիւնազարդ կամարներ։ Այդ պատուանդանների վրայից է երկրորդ յարկի խորանների մուտքը։ Գաւթի իւրաքանչիւր կամարի տակ եղել է մի մի լուսամուտ. դրանցից մի քանիսն այժմ փակ են։

Գաւթի տարածութիւնը՝ արևելքից—արևմուտք 18 արշին է, իսկ հիւսիսից—հարաւ 19 արշին 2 վերշոկ։ Միապաղաղ սիւների բարձրութիւնն է 2 արշին 6 վերշոկ. սիւների շրջապատն է 3 արշ. 11 վերշոկ։ Գաւթի բարձրութիւնը 13 արշին 5 վերշոկ է, իսկ կամարների բարձրութիւնը 8 արշին 6 վերշոկ. կամարների միջի տարածութիւնը 6 արշին 2 վերշոկ։

### ԳԱՒԹԻ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ

Արևմտեան մուտքի կամարի վրայի արձանագրութիւնը կիսով չափ եղծուած է. կարդացւում է.

1) «Կամաւն Աստուծոյ... ոլոլի Գայլաձագին միաբա-

[1] Վանքի նկարագիրն արել ենք 1892 թ. ամառը, դպրոցական ճանապարհորդութեան միջոցին, մեր ջանասէր աշակերտների օգնութեամբ։



ԳՈՇԱՅ ՎԱՆՔ

*նեցայ սուրբ Աստուածածնիս. հաստատեցին դ (4) պատարագ ի տանի Յովհաննու Կարապետին զկնի յայտնութեան. զա (1) իմ՝ մաւրն Գայլածագին զա իմ՝ մաւրն Մամքանին. զբ (2) իմ՝ եղբարցն Բուղանին եւ աղբերկանն. կատարիչքն աւրհնին յԱստուծոյ. ի թվ. ՉԽԲ [1]) (742 Հ. եւ 1293 Թ. փրկչական):*

**Մուտքի աջ կողմը, առաջին սեան գլխին արձանագրուած է.**

*2) «Ի տանի Փիլիպոսի առաքելոյն ա պատարագ Սարկաւագին Սարգսի է անխափան. զՅովհաննէս զվանականն [2]) յաղաւթս յիշեցէք»։*

**Երկրորդ կամարին կից արձանագրուած է. (ամբողջը լաւ չէ կարդացւում)։**

*3) «Կամաւն Աստուծոյ Կիրակոս վարդապետս [3]) տուի ի մեր եկեղեցիս ի (20) գիրք եւ խ (40) դահեկան, ա (1) շուրջառ եւ դրի զղասերս (?) եւ միաբանքս տուին մեզ ք աւր պատարագ ի տանի Թադէոսի առաքելոյն անխափան... զԴղիա... զՅովհ... Սարգ... յիշ...*

**Այս արձանագրութեան ներքեւը.**

*4) «Ես Հարի (?) միաբան սբ. Աստուածածնիս ետու զՍագատափն ի ջաղացէն ի վերի վանքս եւ առացայ ք աւր զեկեղեցիքս պատարագ ի տանի Աստուածածնի. որ խափանէ, դատի յԱստուծոյ»։*

**Գաւթի հարաւային կամարի ճակատին.**

*5) «Ես Մխիթար հիւսն [4]) միաբան եւ աշխատողս եկեղեցույս... լեթն (?) է մինչի ծերութիւն շինեցի զտունս ազաւթից... ՍՍ...գի... այնլովս Յովհաննէս եւ առացայ ինձ յիշատակ հոգւոյ ք աւր պատարագ կամակցութեամբ վարդապանն (?) առաջի Քրիստոսի է զայս եւ միաբանքն ուխ-*

---

1) Կարող է և ՉԽԵ լինել (745).

2) Գուցե աշակերտ և յետոյ նշանաւոր հանդիսացած Յովհաննէս Տաւուշեցին է, որ Վանական մականունը ստացաւ։

3) Անշուշտ Կիրակոս Գանձակեցի պատմագիրն է։

4) Այս Մխիթար հիւսնին յիշում է նաև Կիրակոս պատմաբանը. Գուցե յաջորդ Մարտիրոս վարդապետի ժամանակ եղած շինութիւնները սա է անում։

*տիս մի աւր Մխիթարայ եւ մի աւր Յովհաննիսի Խաչգիւտին տամին. ով զմեր յիշատակս խափանէ մեր մեղացս պարտական է»։*

Գաւթի հիւսիսային կամարի ներքեւը, սեան ճակատին.

6) *«Նշան խաչի... աւրն:.. զի նոցա ընչիւք... յիշեցէք զԹարսեղն...»* (եղծուած է բոլորովին)։

Նոյն կողմը միւս սեան ճակատին.

7) *«Կամաւն Աստուծոյ... եղբարքս Մոպաքիոս (?) Մարտիրոս, Իգնատիոս, Գրիգոր. տվաք յեկեղեցիս խ (40) դահեկան... միաբանքս ը. պատարագ եառւն մեզ զյաւէտ... Աստուածածնին»։*

Գաւթի արեւելեան որմի մէջն է գտնւում մայր տաճարի կամարակապ և գեղեցկաքանդակ մուտքը. այս գաւթից տաճարը մտնելու համար պէտք է բարձրանալ երկու քարեայ աստիճան։ Մուտքի ճակատի քարի վրայ արձանագրութիւն կայ, բայց այնքան եղծուած է, որ չէ կարդացւում։

## II.

## ՍԲ. ԱՍՏՈՒԱԾԱԾՆԱՅ ԵԿԵՂԵՑԻՆ

Այս տաճարն է, որ Գոշ Մխիթարը հինգ տարուայ ընթացքում աւարտեց և փառաւոր հանդիսով օծել տուեց։ Տաճարի պատերն անխախտ են մնացել, բայց կաթուղիկէն և գմբէթը ճեղքուած են և փլուելու վտանգի մէջ։ Բարձրագիր կաթուղիկէն կանգնած է չորս կամարների վրայ, առանց սիւների. իւրաքանչիւր կամարի տակ կայ մի լուսամուտ. կաթուղիկէն եւ չորս լուսամուտ ունի։ Փառահեղ տաճարն ամբողջապէս կառուցուած է մաքուր, սրբատաշ քարից. յատակը ծածկուած է սալաքարով։ Սեղանն ամբողջապէս նոյնպէս սրբատաշ քարից է և աջ ու ձախ կողմից ունի երկյարկանի խորաններ. երկրորդ յարկ խորանների մուտքը բեմի վրայից է։ Տաճարը մկրտութեան աւազան չունի. եկեղեցական զարդերից բոլորովին զուրկ է. բեմը նոյն իսկ խաչկալ չունի. պատարագն ուղղակի վէմ քարի վրայ է տեղի ունենում։ Միակ արծաթեայ ոսկեջրած սկիհն էլ, ինչպէս երեւում է վրայի գրուածքից, սբ. Էջմիածնից է ուղարկուած [1])։

---

[1]) «Յիշատակ է Շորթեցի Ստեփանի կողակից Փարուոյն, որդ-

Տաճարի երկարութիւնն է 14 արշին 6 վերշոկ. լայնութիւնը 13 արշին 10 վերշոկ. կամարների միջի տարածութիւնն է 6 արշ. 10 վերշոկ. իսկ կամարների բարձրութիւնը 15 ու կէս արշին։ Բեմի բարձրութիւնն 1 արշին 12 վերշոկ. բեմը բարձրանալու համար հաստատուն աստիճաններ չկան. քարեր են դարսուած։

## ՄԲ. ԱՍՏՈՒԱԾԱԾՆԱՑ ԵԿ. ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ

Տաճարի արեւելեան, հարաւային և հիւսիսային որմերի վրայ կան արձանագրութիւններ, որոնք մեծ մասամբ դժուար են կարդացւում. սրանցից մեծ մասը փորագրուած է, իսկ փոքր մասը կարմիր ներկով գրուած սուաղի վրայ։

Տաճարի հիւսիսային պատի վրայ, լուսամուտի ձախ կողմը.

1) «Կամաւն Աստուծոյ ես մեղուցեալ ծառայս Ներքնիքս (?) որդի Վառուզա (?) եւ իմ՛ որդիս Աազ Պարոն միաբանեցաք Աստուածածնիս յիմ՛ հալալ ընչից գնեցի յարինչք (?): Ա: այգի ի Դ. Սպ. Նազար (?) տուի սուրբ Աստուածածնիս, որ շէն պահեն. միաբանքս տուին ինձ ե (5) պատարագ ծառազարդին աւրն անխափան. կատարիչքն աւրհնին յԱստուծոյ»:

Այս արձանագրութեան տակը.

2) «Կամաւն Աստուծոյ ես Գոհարս յուսով միաբանեցայ սբ. Աստուածածնիս. միաբանքս ետուն մեզ ա (1) պատարագ ի տանի Անտոնացն Աստուածածնին. կատարիչքն աւրհնին»։

Սրանից ներքեւ.

3) «Կամաւն Աստուծոյ ես Խաչատուրս[1]) միաբանեցայ սբ. Աստուածածնիս եւ միաբանքս ետուն ինձ բ (2) պատարագ ի տանի սբբոյն Բարսեղի անխափան թվ...»:

Սրանից ցած.

4) «Ես Մ՚խիթար քահանայ միաբանեցայ սբ. եկեղե-

ւոյն և եղբօրն Յակոբի և քեռն Թոռիկին, որ եա ի մայր Էջմիածին 1219 թ.» (երեւի հայկական և 1760 փրկչական)։

[1]) Հաւանականօրէն Կիրակոս Գանձակեցու յիշած վերջին աշակերտն է. ափսոս որ թուականը, որ ամենակարեւորն էր, եղծուած է։

ցիս ընծայիւք. վարդապետք եւ միաբանքս հաստատեցին ինձ ա (1) աւր պատարագ ի տանի սըրոյն Գայիանեայ. խափանողքն դատին ի Տեառնէ»:

Այս արձանագրութեան տակ.

5) «Ի տանի սբ. Գրիգորին ա պատարագ Աստուածատուր քահանայի է անխափան»:

Սորանից ցած.

6) «Ի տանի Խաչգիւտին է պատարագ: Ապանա (?) նորոգեցի մինչ կենդանի է (?) իմաստունին եւ Սըղէկ տիկնա (?) անուն եւ ապա ինձ է»։

Սրա աջ կողմը.

7) «Ի տանի Գալստեան սբ. Հոգոյն ա պատարագ Վարհամաս (?) հայերին (?) է անխափան»։

Լուսամուտի աջ կողմը.

8) «Կամաւն Աստուծոյ ես Ստեփանոս քահանայ... արդեան միաբանեցայ սբ. Աստուածածնիս եւ սոքա ետուն ա պատարագ ի տանի Կիրակոսի անխափան. զառաքեալն յիշեցէք ի Տէր»:

Հիւսիսային պատի կամարի տակ, կարմիր ներկով ու եղծուած արձանագրութիւն.

9) «Ցուասովն Աստուծոյ ես Հայրապետս... միաբանեցի սբ. Աստուածածնիս... մանկանց այս... հոգս իմոյ առաջնորդ ժ (10) պատարագ ի տանի...»:

Սրա տակ սև ներկով գրուած է եղել, բայց եղծուած է. սորանից ցած կայ դարձեալ մի արձանագրութիւն, որ նոյնպէս չէ կարդացւում. այս բոլորի տակն արձանագրուած է.

10) «Ես Բարսեղս միաբանեցա սբ. Աստուածածնիս. միաբանքս ետուն ա պատարագ ի տանի սըրոյն Բարսղի. կատարիչքն աւրհնին յԱստուծոյ»:

Սրա կողքին.

11) «Ի տանի ծառզարդարին ա պատարագ Եղիսաբէթին անխափան»:

Հիւսիսային պատի փակուած մուտքի ճակատի լուսամուտի տակ.

12) «Կամաւն Աստուծոյ ես Սմբատ Ջանհամս (?) միաբանեցաք Աստուածածնիս գլթ... ոսացն (?) եկեղեցոյս

*տուաք հաստատ հայրենիք յազգէ յազգ եւ միաբանքս տուին մեզ բ (2) աւր պատարագ ի տաւնի Աստուածածնի անխափան»:*

**Սրա աջ կողմը.**

13) *«Կամաւն Աստուծոյ ք եղբարքս Բարակէս եւ Վըրթանէս միաբանեցաք Աստուածածնիս... անալ (?) ք պատարագ յայտնութեան ա (1) յաւանին (?) ա (1) տիրացուին (?)»:*

**Կամարի վրայ արձանագրուած է.**

14) *«Ես Մարզպան Իշխան եւ որդիք իմ Ասլան Բէգ եւ Գրիգոր միաբանեցաք սբ. Աստուածածնիս եւ տուաք ի մեր հայրենեաց Ցողջաքեղ այգի մի եւ ա գուլթան ի հող յարան ազատ յամէն հարկէ եւ ստացաք բ (2) աւր պատարագ զեկեղեցիքս ի տաւնի.., որ խ...(փանէ) դատի ի Տեառնէ»։*

**Նոյն պատի վրայ, ուղղակի մուտքի ճակատին.**

15) *«Թվ ՈԿ—660 հայոց եւ 1211 Թ. փրկչական—ես Ցովհաննէս միաբանեցի ազատ... զԳետկայ ժողովուրդ ի հարկէ, որ տուին յաթոռն յիշխանութեան Գոնցա (?) խաթունին խնդրոք Կիրակոս վարդապետի ի հայրութեան Աբրահամ վարդապետի. որ զայս խափանէ յԱստուծոյ եւ յամեն սրբոց նզովեալ եղիցի եւ կատարողքն աւրհնեալ. միաբանքս տուաք նմա բ (2) պատարագ զմեծ եկեղեցիս ի տաւնի Ցովհաննու ի զատկին անխափան... Թւիս (?) վըկայութեամբ Ցովհաննիսի արար ի կենաց (?) Վարդան վարդապետի»* [1]):

**Տաճարի հարաւային պատի վրայ, լուսամուտից բարձր, աջ կողմի արձանագրուած է.**

16) *«...Մեք որդիք Ճարին եւ Թորք պարոն Ումէկին միաբանեցաք սբ. ուխտին Գետկայ... զանձագին հայրենի եկեղեցոյս եւ ետու ի հալալ արդեանց իմոց հայ-*

---

[1]) **Այս արձանագրութեան մէջ մի քանի պատմական անուններ կան—Կիրակոս պատմաբան, Վարդան վարդապետ պատմաբան. բայց Ցովհաննէսը չի հասկացւում թէ ո՛ր Ցովհաննէսն է. Աբրահամ վանահայրը Կիրակոսի ցանկի մէջ կայ։**

*ընկի գնեղն ի Նախէղուռն (?) յիմ՝ խաս այգի ճ(100) կուժ գինի անձի (?) մեծ կժուլն ի յամէն ամ՝... հոգեւոր հայրն իմոյ ղա (?) վղին. (?) եւ միաբանքս հաստատեցին զՔսի. յայտնութեան աւրն զՀրաւհնէք մեզ պատարագ... որչափ... տանի իմ՝ ծնողաց եւ իմ՝ եղբարցս լինի եւ յետ ելից իմոյ յաշխարհէս ինձ լինի պատարագն եւ նեթէ ոք յիմոց կամ՝ աւտարաց խափանել ջանայ զի յիշատակս Քսի. անեղ առենի իմ՝ մեղացն պարտական է եւ յերիս սբ. ժողովոյն նզովեալ եղիցի. ի թվ...»։*

**Սորանից ցած.**

17) *«Ցուսովն Աստուծոյ ես Անղուրս (?) եւ որդի իմ՝ Թաղէն եւ ամուսին իւր Մանքու միաբանեցաք սբ. Աստուածածնիս. եւ ետուն պատարագել մեզ զեկեղեցիս ի տանի սբ. Շողակաթին անխափան. ի թվ· ՉԻԶ»*--726 *հայոց եւ 1277 թ. փրկչական։*

**Մի փոքր ներքև.**

18) *«Ցուսովն Աստուծոյ. նուաստս Շալվա կամ Շուլվա (?) նորոգեցի ընծայս նախննաց իմոց զակակս (?) վերջինս աւելի քան զառաջինն. սպասաւորք սբ. Աստուածածնի հաստատեցին ե (5) աւր պատարագ ի տանի սբ. Սարգսի. գ (3) զեղին (?) ա Սիմէոնի, ա Ելթէ (?) կատարողքն աւրհնին»։*

**Այս արձանագրության տակ, լուսամուտից ցած կարդացւում է.**

19) *«Կամաւն Աստուծոյ ք (2) եղբարքս Սարգիս եւ Սեւաղայ... եւ միաբանք սբ. Աստուածածնիս ետուն մեզ ք (2)պատարագ ի տանի սբ. Ցակովբին անխափան»։*

**Սրանից ներքև.**

20) *«Ի տանի սբ. Ստեփաննոսի ք պատարագ Աստուածատրոյ է անխափան»։*

21) *«Ի տանի սրբոյն Սարգսի ա պատարագ Գագկա է անխափան»։*

**Նոյն կողմը, դրանից դէպի աջ.**

22) *Ի տանի Սարգսայ առին (?) ի սբ. խորանի մարզին (?) պատարագ Ասլանայ փային (?). իսկ խափանողքն դատին յԱստուծոյ. ամէն»։*

*Սրանից վերև, կարմիր գեղով գրուած է սուաղի վրայ.*

23) «Կամաւն Աստուծոյ մեք երկու եղբարքս Աղբաղէս եւ Ջովատս (?) միաբանեցաք սբ. Աստուածածնիս եւ միաբանքս հաստատեցին մեզ բ պատարագ»:

*Նոյն կողմը, անմիջապէս խորանի կողքին.*

24) «Ողորմեա Աստուած ապաւինեալ, մեղուցեալ ծառայքս Աստուծոյ. որ... Ացելաքէզ (?), Մխիթար, Զաքէոս միաբանեցաք սբ. Աստուածածնիս. ետուն ա պատարագ երեւման սբ. Խաչին անխափան»։

*Խորանից բարձր, տաճարի արեւելեան պատի վրայ.*

25) «...միաբանեցայ սբ. Աստուածածնիս ա: լուծէ զաբքան (?) պատ (?) զոր եկեղեց (?)... ի տաւնի սբբոյն Գրիգորի, որ խափանէ, դատի յԱստուծոյ»։

*Սրա կողքին.*

26) «Ես Գրիգոր միաբանեցայ սբ. Ածածնիս. յաւուր զալստեան Հոգւոյն ի սբ. սեղանն պատարագն հիսանն է Մխիթարայ. խափանողքն դատապարտին տալ ի տանջանսն»։

*Սրանից ցած.*

27) «Այս խորանս Անտոնի արդեամբք է շինած եւ ի տաւնի Անտոնի պատարագն Անտոնի եւ իւր որդոցն. խափանողքն դատին»։

28) «Ցայսմ խորանի յաւուր տաւնի սբբոյն Ստեփաննոսի... Ստեփաննոսի մատուցի պատարագ անխափան... յաւուր բ... խափանիչքն դատապարտեսցին»։

29) «Ի տաւնի սբ. Մարգարէիցն բ. աւր պատարագ Աբքասա...»։

*Դրան աջ կողմը.*

30) «Ես Աւտասէքս (?) միաբանեցայ ի սբ. Ածածնիս եւ տուի զԹազաւորակային (?) կէսն այգատեղ վանիցս ի հայրութեան Մարտիրոսին[1]. վարդապետքս եւ միաբանքս գրեցին զՑովհաննու եւ զՅակոբայ տաւնն պատարագ ի ծնողացն Հաբքայ (?) եւ տիկնոջն զամէն եկեղեցիքս. որ

[1]) Մխիթար Գոշի անմիջական յաջորդ վանահայրը Նոր Գետիկայ վանքում

*խափանէ ղատի ի Տեառնէ եւ յժը—318 Հայրապետացն ընդ նզովս իցէ»։*

Հարաւային որմի վրայ, կամարի աջ կողմից.

31) *«Ցաւուր տաւնի սրբոյն Սարգսի սեղան պատարագն Սարգսին Մոգեց—ոյն (?) անխափ.ն. որ խափանէ, դատի ի Տեառնէ»։*

32) *«Ցաւուր մեծի Հինգշաբթի բ պատարագ Բշնեցի Գինէի (?) է անխափան»։*

33) *«Ի տաւնի սբ. Յոգւոյն դ (4) պատարագ Մխիթարայ է անխափան»։*

34) *«Ի տաւնի Աստուածածնի ա պատարագ տիկնոջն (?) է անխափան»։*

35) *«Ի տաւնի սրբոյն Սարգսի ա պատարագ Մխիթարայ եւ մայրախաթունին է անխափան. կատարիչքն աւրհնին յԱստուծոյ»։*

36) *«Ի տաւնի սրբոյն Սարգսի բ պատարագ Սարգսին եւ Մարտիրոսին է եւ Թաւրոսին»։*

37) *«Ի տաւնի սրբոյն Ցակովբայ ա պատարագ Մարգարէին է անխափան»։*

Հարաւային պատին կից խորանի վերեւում ներկով գրուած արձանագրութիւն կայ, բայց չէ կարդացւում։

Հիւսիսային պատի տակ մուտքի աջ կողմը.

38) *«Ի տաւնի Անդրէի առաքելոյն բ. պատարագ Անդրէասին է անխափան»։*

Սրանից ցած կայ մի երկտողանի, ներկով գրուած արձանագրութիւն, որ եղծուած լինելով չէ կարդացւում. դրան յաջորդում է հետեւալը.

39) *« Ես Ցուլհաննէս միաբանեցայ սբ. Աձաձնիս. միաբանքս ետուն բ. ժամ ի տաւնի Անդրէի առաքելոյն անխափան»։*

40) *«Ես մեղուցեալ աղախին Քսի. Ազիզ (?) պաշտպանեայ... (?) միաբանեցայ ի սբ. Աձաձինս եւ ետուն ինձ ա պատարագ ի տաւնի սրբոյն Հռիփսիմեանց. որ խափանէ դատի ի Տեառնէ»։*

Հարաւային պատին կից.

41) «Ի տանի Սուքիասի ա պատարագ... է անխափան»։

Սրանից բարձր.

42) «Ցիշեալ լիցին ի Տէր առաջին միաբանքն մեր Ալփասլան եւ Գոհար խաթուն եւ ատոր մեծին Հիզշաքթի նոցա լիցի պատարագ»։

43) «Թվ. ՈԿԵ—665 հայոց եւ 1216 Թ. փրկչական— ես Գոհար ընդ առաջին միաբանութեան ետու զիմ այգի իշխանական Խաչատուր Թուագոմն (?) ի սբ. Աձաձնիս եւ պարտին յիշման սբ. Հոգւոյն բ (2) խորան պատարագել»։

Տաճարի արեւելեան պատի վրայ, սեղանի յետեւն արձանագրուած է.

44) «Ցուսով ողորմութեամբ Այ. ես ճարս, որդի պատրոն Ումեկին թոռն ճարին, աշխարհաւ Մանըզկերտցի յաշխարհակալութեան Ղամուռնին (?) եւ թագաւորութեան վրաց Դիմիտրի Բագրատունոյ, իմ հայրն Ումեկ գնեալ էր զԳետիկ ի խռ [1]) (40,000) (?) կարմիր դուգատի. ես ճարս գնեցի զհող իւր ամէն սահմանօքն ի դառն ժամանակի, որ հայրենիքն յարժանն էր եւ ոսկին թանգ. դռ (4000) կարմիր դուկատ տուի Գետկայ Աձաձնիս իմ հոգւոյ տանս, յիշատակ անջնջելի իմ ծնողաց Ումեկին եւ Թագուհւոյն ինձ եւ իմ որդեաց Արղութին իւր եղբարցն. առաջնորդութեամբ Ղասապ [2]) (?) վարդապետին եւ միաբանքս սահմանեցին զաւագ եշ. (Հինգշաբթի) աւրն եւ զՋատիկ աւրն զամէն եկեղեցիքս պատարագ որչափ կենդանի եմք մեր ծնողացն լինի եւ յետ ելից մերոց յաշխարհէն մեզ լինի. արդ ով զայս գիւղս այս եկեղեցւոյս հանել ջանայ կամ զիմ յիշատակն խափանել ոք եւ իցէ որ լինիցի ի ծննդոցն Ադամայ եղիցի նզովեալ»։

Սրանից ներքեւ արձանագրուած է.

45) «Կամաւն Աստուծոյ ես Գրիգոր Հնջուք ամիր սպասալար Աւագին, որդի Սմբատայ, որդւոյ մեծին Վախ-

[1]) Աւելի հաւանական է, որ ԽՌ (5 հազար) լինի։

[2]) Հաւանական է, որ Կիրակոս պատմաբանի յիշած Ցովասափ(փ) բառի սկիզբը եղծուելով՝ այսպէս է կարդացւում այժմ։

*տանգայ կողմնապետաց աշխարհին Արցախու առեալ հանէի մնոյց զիմ եւ իւր տունն Աւագին (?) իւրեան ազգին (?) առաջնորդ կացոյց, զի ոչ ունէին զաւակ. յուսով խնդրեցի զայս եկեղեցին ինձ շիրիմ հանգստեան. Աւագն ինձ ետ եւ միաբանքս սահմանեցին զայս խորանս պատարագել ինձ զՔս. հանապազ. ով կարդայք Աւագին երկար կենդանութիւն խնդրեցէք եւ Գրիգորոյս մեղաց թողութիւն. թէ աւագ կամ առաջնորդ խափանէ յժը (318) հայրապետացն նզոված է եւ մեղացն տէր է»։*

**Այս արձանագրութեան բովանդակութիւնը ճշտիւ համապատասխանում է Կիրակոս պատմաբանի տուած տեղեկութեանը Գըրիգորի մասին, որ յետոյ կառուցել տուեց և սուրբ Գրիգորի գեղեցիկ տաճարը։**

## III

## ՍՈՒՐԲ ԳՐԻԳՈՐ

Գաւթի հարաւային որմին արտաքուստ կցուած է մի փոքր, գեղեցկաշէն տաճարի շէնքը։ Այս հոյակապ տաճարն առանց գմբէթի է. կտուրը ծածկուած է սալ քարերով, որոնցից մի մասն արդէն թափուել է։ Մուտքն արևմտեան կողմից է։ Եկեղեցու թէ մուտքը և թէ առհասարակ արտաքին պատերը զարդարուած են գեղեցիկ և նուրբ քանդակներով։

Գեղեցկաքանդակ տաճարի հարաւային պատն արտաքուստ խախտուած է և այդ իսկ պատճառով չէ կարդացւում դրա վրայի երկու տողից բաղկացած արձանագրութիւնը. միայն այսքանն է որոշւում.

«Ի ՈՁԶ—686 հայոց և 1237 փրկչական Թ.—ես Գրիգոր որդի Ս... (երևի Սմբատայ) . . . միաբանքս ետուն զաւագ խորան եկեղեցւոյս ինձ պատարագ . . . զատի ի Տեառնէ . . . ողքն (երևի կատարողքն) աւրհնին յԱստուծոյ»։

Տաճարը ներսից նոյնպէս զարդարուած է քանդակազարդ սիւներով և պատերով. առաստաղը միայն մի կամարից է բաղկացած։ Խորանաձև սեղանի պատերը նոյնպէս նուրբ քանդակներ ունեն. յատակը ծածկուած է եղել սալ քարերով, որոնք այժմ վերցուած են. արտաքին լոյսը ներս է թափանցում երեք լուսամուտների միջով։ Բեմի աջ և ձախ կողմերում կան փոքրիկ խորաններ։ Տա-

*ճարի երկարութիւնն է 5 արշին 3 վերշոկ. լայնութիւնը՝ 5 արշին 10 վերշոկ. բեմի բարձրութիւնը 1 արշին 6 վերշոկ է։ Ներսից՝ տաճարի պատերի վրայ ոչ մի արձանագրութիւն չկայ։*

*Այս փոքրիկ, բայց հոյակապ քանդակագործութեամբ և խնամքով կառուցուած տաճարն այժմ թէև անուն չունի, բայց ճշտիւ համապատասխանում է Կիրակոս պատմաբանի յիշած Սբ. Գրիգոր եկեղեցուն [1]), որ շինել տուեց Գրիգոր իշխանը. այս Գրիգորը մեր առաջ բերած արձանագրութիւններից մէկի մէջ (45) իրեն անուանում է «որդի Սմբատայ» և թոռն «Արցախու կողմնապետ մեծ Վախտանգի»։*

*Սբ. Գրիգորի մուտքի աջ և ձախ կողմից, արտաքուստ, դրուած են երկու խաչքար, որոնց քանդակները գերազանցում են մեր տեսած բոլոր խաչքարերի քանդակներին և առանց չափազանցութեան կարելի է ասել, որ հրաշալի են։ Մուտքի աջակողմեան խաչքարը դրուած է պատուանդանի վրայ, իսկ ձախակողմեանը՝ գետնին. առաջինն ամբողջ է, իսկ երկրորդը կոտրուած և երկու մասն եղած։ Աջակողմեան խաչքարի պատուանդանի վրայ արձանագրութիւն կայ, բայց տարաբաղդաբար կարևորագոյն մասը, անունը, չի երևում. մնացածը հետևեալն է.*

*«. . . Վարդապետ կանգնեցի զխաչս ի վերայ շիրմիցն . . . ղաց (երեք ծնողաց) իմոց և եղբարց և ինձ թէ Տէր կամեցի որ և . . . ողորմեցի Աստուած. բարեխաւսութեամբ ամենայն սրբոց. ի Թվ. ՉԽ».—740 հայոց և 1291 փրկչական թ.։*

*Աջակողմեան խաչքարի բարձրութիւնն է 3 արշին 2 վերշոկ, լայնութիւնը 1 արշին 7 վերշոկ. պատուանդանի բարձրութիւնն է 2 արշին 1 վերշոկ։ Ձախակողմեան խաչքարի բարձրութիւնն է 2 արշին 14 վերշոկ, լայնութիւնը 1 արշին 10 վերշոկ։*

## IV

## ԴԱՐՁԵԱԼ ՍԲ. ԳՐԻԳՈՐ

*Աստուածածնայ մայր տաճարի հարաւային պատի մօտ կառուցուած է մի այլ եկեղեցի, որ այժմ սուրբ Գրիգոր է կոչւում. տաճարի միայն պատերն են անխախտ, կաթուղիկէն և գմբէթը աւերուած—կործանուած են։ Մուտքն արևմտեան կողմից է՝ կա-*

---

[1]) *«Շինեաց և հրաշազան եկեղեցի մի՝ երկքխորանի, մերձ ի դաւիթս եկեղեցւոյն, շինուած զարմանակերտ, և անուանեցաւ եկեղեցին յանուն սրբոյն Գրիգորի»—Կիրակ. էջ 130.։*

*մարակապ և սիւնազարդ. հարաւային պատի վրայ, արտաքուստ, արևի ժամացոյց կայ։ Մուտքի ձախ կողմի պատուանդանների վրայ կան երկու խաչքարեր՝ առանց արձանագրութեան։*

*Տաճարը ներսից նոյնպէս կառուցուած է մաքուր, սրբատաշ քարից. կաթուղիկէն կանգնած է եղել առանց սիւների, կամարների վրայ. ամեն մի կամարի մէջ մի լուսամուտ է եղել։ Ցատակն այժմ ծածկուած է հողով, սակայն հաւանօրէն սկզբումը սալ քարով կլինէր շինուած։ Բեմի աջ և ձախ կողմը գտնւում են երկյարկանի խորաններ. վերին յարկ խորանների մուտքը բեմիցն է։ Բեմն այժմ հաստատուն աստիճաններ չունի, քարեր են դարսուած։*

*Տաճարի երկարութիւնն է* 14 *արշին* 6 *վերշոկ. լայնութիւնը* 10 *արշին* 1 *վերշոկ. կամարների միջի տարածութիւնն է* 3 *արշին* 12 *վերշոկ. կամարների բարձրութիւնն է* 11 *արշին* 4 *վերշոկ։ Բեմի բարձրութիւնն է* 1 *արշին* 11 *վերշոկ։*

*Այս տաճարի շէնքը ճշտիւ համապատասխանում է Կիրակոս պատմագրի յիշած այն եկեղեցու նկարագրութեանը, որ Մարտիրոսի վանահայրութեան ժամանակ կառուցուեց, մի առ ժամանակ թերի մնաց և յետոյ ՈՂ.*—690 *հայոց և* 1241 *փրկչական թուին աւարտեց Գրիգոր Կապալեցին* [1]*։ Կիրակոսն այս եկեղեցու անունը չէ յիշում. արդեօք այս տաճարն էլ սկզբից սուրբ Գրիգոր կոչուեց թէ Գրիգոր Տղայի կառուցած եկեղեցու անունը սրան են վերագրել՝ ճշտիւ յայտնի չէ, շփոթութիւնը նրանից է առաջանում, որ Կիրակոս պատմագրի յիշած սուրբ Գրիգորն այժմ անուն չունի, իսկ այն եկեղեցին, որի անունը նա չէ յիշում, այժմ սուրբ Գրիգոր է կոչւում։*

## ՍԲ. ԳՐԻԳՈՐԻ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ

*Տաճարի արևմտեան սիւնազարդ մուտքի կամարից բարձր կայ մի խաչքար, որի շուրջն արձանագրուած է.*

1) «Ած. ողորմեսցի Նազար Շահին եւ ծնողաց նորին»։

*Մուտքի ճակատի քարի վրայ.*

2) «Ցուսովն Աստուծոյ-ք եղբարքս Մարտիրոս եւ Գրիգոր

---

[1] «Սկսան շինել և այլ եկեղեցի մի հինգ խորանօք, կափածոյ և տաշած վիմօք, դմբէթաւոր և գեղեցիկ շինուածով. և երբ ընդմիջեցաւ եկեղեցին՝ խափանումն եղև յոլով ժամանակս. քանզի եկն Սուլտանն Խորասանայ, Ջալալադինն կոչեցեալ, և եհար զզօրս հայոց և վրաց. և աւերեաց զբազում գաւառս. վասն այսր պատճառի և այլ յոլովից մնաց անաւարտ։ Ցետոյ այր ոմն Գրիգոր անուն, Կապալեցի, որ յառաջն արգելնաւորեալ էր ի շինումն եկեղեցւոյն, վերստին ի ձեռն առեալ՝ աւարտեաց զնա ի ՈՂ. թուականին»։ Տես. Կիր. նոյնը էջ 130.։

*եւ ամուսին Թամար, Աբէլ եւ Փէրաժ շինեցին զեկեղեցիս... տնկեցին զայգին. Տէր Յովհաննէս եւ միաբանքս ետուն նոցա պատարագ զեկեղեցիս ի տաւնն սրբոյն Գրիգորի զե. խորանս Մարտիրոսի, Գրիգորի, Փէրաժին, Թամարին, Նազախաթունին եւ Մատթէոսին անխափան. կատարիչքն աւրհնին յԱստուծոյ. ՈՁ—680 հայոց եւ 1231 փրկչական թուին*[1]։

Արեւելեան պատի վրայ.

3) *«Շնորհիւ Աւ. կամակցութեամբ եղբարցս եւ միջնորդութեամբ սբ. Գրիգորիսի զրեցաւ յիշատակ եղբարց մերոց պատրոն Սմբատաւաղայ (?) միաբան սբ. ուխտիս եւ սահմանեցաք ի տաւնի Դաւթի եւ Յակովբայ մատուցին պատարագ յամենայն եկեղեցիքս զկէսն Սմբատաւաղայ եւ զկէսն ամուսնոյ իւրոյ Աւթային. որ խափանէ դատի ի Տեառնէ»։*

Զախակողմեան խորանի ճակատին.

4) *«Ծառայն Աստուծոյ Գէորգ եւ ամուսին իւր Կատայ (?) եւ զաւակք նոցին շինեցին իւրեանց ընչիւք զխորանս. ք աւր պատարագն նոցա է ի տաւնի սրբոյն Գէորգայ. Խափանողքն դատին ի Տեառնէ»։*

Այս արձանագրութիւնից բարձր.

5) *«Մեք եղբարքս Սքումայ (?), Աքուզմար (?) եւ Հայրապետ մեր հոգւոյ արդիւնք յեկեղեցւոյս շինութեան տուաք յուսով. մի աւր պատարագ սրբոյն Սաւգսի՝ մեզ հատուցեն. խափանողքն դատին ի Տեառնէ»։*

Հարաւային պատի վրայ, բարձր.

6) *«Ես Գրիգոր*[2]*) միաբանեցայ եղբայր նոցա ետու յիմ վաստակացս ի շինութեան եկեղեցոյս եւ ստացայ գ (3) աւր պատարագ ի տաւնին սրբոցն Յովհաննու եւ Յակոբայ... Մխիթարա... (?) քոնի (?) Ճահն... (?) ով խափանէ, դատի ի Տեառնէ. ամէն»:*

Այս արձանագրութիւնից ցած, դէպի աջ.

7) *«Տաւնին սրբոյն Սարգսի ա պատարագ Սարգսի է անխափան»։*

Սրա կողքին, ձախ կողմը.

8) *«Կամաւքն Աստուծոյ ես Ապուղամր (?) մեծաւ յուսով միաբանեցայ Անձածնիս. միաբանքս ետուն ա պատարագ... կիւրակէին»։*

---

[1]) Թուականը ճշտիւ համապատասխանում է Կիրակոսի ասածին, որ այս եկեղեցու աւարտումը նշանակում է ՈԼ թուին, ճիշտ 10 տարի յետոյ. ուրեմն ՈՁ բակերգն է։

[2]) Անշուշտ այս Գրիգորը Կիրակոս պատմ. յիշած Գրիգոր Կապալեցին է։

# V

## ՓՈՔՐ ՄԱՏՈՒՌՆԵՐ ԵՒ ԽԱՉՔԱՐԵՐ

*Երկու Սուրբ Գրիգոր եկեղեցիների մէջ գտնւում է սրբատաշ քարից շինուած մի փոքր մատուռ՝ երկու խորաններից բաղկացած։ Այս խորաններից իւրաքանչիւրի երկարութիւնն է 2 արշին 11 վերշոկ. լայնութիւնը 1 արշին 13 վերշոկ. բարձրութիւնը 3 արշ. 14 վերշոկ։ Մատուռի վերայ կանգնեցրած է մի խաչքար. երեւի մէջը գերեզման կայ. մատուռի մօտ գերեզմանաքարեր կան, բայց սրանք նոր ժամանակների գործ են երեւում։*

*Երկրորդ սուրբ Գրիգոր տաճարի արեւելեան պատի տակ կան բազմաթիւ խաչքարեր և սրբատաշ քարերի կոյտեր, որոնց տակ մնացել է մի փոքր խորան՝ սրբատաշ քարից կառուցուած. այժմ խորանի պատերն են միայն կանգուն մնացել. ընկած կամարաձև քարը, որ ինչպէս երեւում է մուտքի ճակատի քարն է եղել, հետեւեալ արձանագրութիւնն է կրում.*

*«Ի թվ. ՈԾԷ—657 հայոց և 1208 փրկչական շինեցաք զեկեղեցիս Սերովբս, Միսաքս ի ձեռն... Մխիթարայ ի բարեխաւսութեան մեզ և ծնողած մերոց և եսուն ա աւր պատարագ ի տանի սրբոյ Սարգսի և Թէ ոք խափանէ, դատի յԱստուծոյ»։*

*Այս արձանագրութեան թուականից երեւում է, որ մատուռները պէտք է շինուած լինին Գոշ Մխիթարի օրոք. և Կիրակոս Գանձակեցին յիշում է, որ Գոշը շինեց նաև մի քանի մատուռներ սբ. Հռիփսիմէի, Առաքելոց, սբ. Կարապետի անուններով [1])։*

*Սուրբ Աստուածածին տաճարի արեւելեան պատի տակ գտնւում են հին գերեզմանաքարեր. դրանցից մէկը դագաղի ձև ունի, մէկն էլ սալ քարից է և վրան արձանագրուած է.*

*«Պարոնութեան Արղութին և Խորիշ խաթունին եւ Պետրոս վարդապետ կանգնեցի զխաչս բարեխաւս սուրբս մեզ և ծնողած մերոց. ի թուին ՉՂԴ»—794 հայոց ու 1345 փրկչական։*

---

[1]) «Շինեցին ի Նորն Գետիկ և՛ս փոքրագոյն եկեղեցի մի յանուն սուրբ Կարապետին Յովհաննու ի գլուխ վանիցն»—էջ 123։ «Շինեցին և այլ մատուռնս յանուն սրբոց առաքելոցն, և սրբոյն Հռիփսիմեայ»—էջ 126։

## VI

## ԳՐԱՏՈՒՆ ԵՒ ԶԱՆԳԱԿԱՏՈՒՆ

Գաւթի հիւսիսային որմին կից գտնւում է մի խորանաձև կամարակապ շէնք, որ գաւիթը միացնում է զանգակատան հետ. այս խորանաձև մուտքի աջակողմեան պատի վրայ կան երեք կամարներ. մէջ տեղի կամարի մէջն է զանգակատան մուտքը։ Խորանաձև մուտքի երկարութիւնն է 13 արշին 4 վերշոկ. լայնութիւնը 2 արշին 10 վերշոկ. բարձրութիւնը 5 արշին։ Մուտքի արեւմտեան կողմը որմով պատած է, բայց պարզ երեւում է, որ այդ պատը վերջին ժամանակների գործ է։

Զանգակատան պատերի ստորին մասերը 4 արշին 10 վերշոկ բարձրութեամբ շինուած են ոչ սրբատաշ քարից. պատերի մէջ դրուած են ահագին մեծութեամբ ժայռի կտորներ. այնուհետեւ սկսւում են մաքուր, սրբատաշ քարից շինուած մասերը, որ անխախտ ու ամբողջ են մնացել. միայն կտուրի վերին մասն է խախտուած։

Զանգակատունը բաղկացած է մի քանի յարկից. ստորին յարկը, որի մուտքը միջանցքի կամարի միջիցն է, առանձին ու ինքնուրոյն ճարտարապետութեամբ է շինուած։ Զանգակատան ներսի կազմակերպութիւնից երեւում է, որ այստեղ իսկապէս երկու շէնք կայ։ Զանգակատան բարձր կամարներից ցած շինուած է մի գմբէթաձև տանիք, որ կանգնած է կիսասիւների վրայ. այս կիսասիւները չորս անկիւններում զոյգ զոյգ իրար հետ միանալով կազմում են փոքրիկ եռանկիւններ։ Եռանկիւնների մէջ մնացած ութ տարածութեան փոքրիկ տանիքները քերուբաքանդակ են. այս ութը կիսասիւները շէնքի պատերի մէջը չեն, այլ ուղղակի կցուած են որմերին։ Շէնքի այս կազմութիւնից երեւում է, որ զանազան նպատակների է ծառայել. ստորին յարկի որմերի մէջ եղած մեծ դարանները ցոյց են տալիս, որ այս յարկը եղել է գրադարան կամ գրատուն։ Դարաններից մէկի մէջ, հիւսիսային պատում, անց է կացրած մի խողովակ. երեւի վառարան է եղել այդ տեղ։

Մեր ենթադրութիւնը, որ այս քեղեցկաքանդակ շէնքը գրադարան պէտք է եղած լինի, հիմնւում է նոյնպէս Կիրակոս պատմագրի այն տեղեկութեան վրայ, որ Մարտիրոս առաջնորդը—Գոշի անմիջական յաջորդը—ի միջի այլ շէնքերի, շինել տուեց և մի

«գրատուն գեղեցկաշէն յարկօք [1])»։ Որոշ ժամանակ անցնելուց յետոյ, երևի երբ վանքն այլ ևս դպրոցի դեր չէր կատարում, գրատան վրայ շինւում է զանգակատունը։

Գրատան արևելեան պատի մօտ, ներսից, մի գերեզմանաքար կայ, որ արձանագրութիւն չունենալով՝ յայտնի չէ թէ ում շիրիմն է։ Գրատան յատակն այժմ հողով է ծածկուած. երկարութիւնը, ինչպէս և լայնութիւնը 10 արշին է։ Արևելեան, հարաւային և հիւսիսային պատերի մէջ զոյգ զոյգ լուսամուտներ կան։

Զանգակատան երկրորդ յարկի մուտքն արտաքուստ է, արևմտեան կողմից. քարեայ աստիճաններով բարձրանալով՝ մտնում ենք երկրորդ յարկը, որ կամարակապ է, կաթուղիկէով և գմբէթածածկ. գմբէթն այժմ չկայ։ Հիւսիսային և հարաւային պատերի մէջ կան լուսանցքներ, որոնք սիւներով բաժանւում են երկու մասի։ Արևելեան պատի մէջ միմեանց կից շինուած են երկու պատարագամատոյց խորաններ. յատակը կազմում է առաջին յարկի տանիքը, որի մէջ բացուածքներ կան, որոնք միմեանց հետ հաղորդակցութիւն ունին։

Արևելեան պատի վրայ կարդացւում է հետևեալ արձանագրութիւնը.

«Կամաւն Աստուծոյ ի թվին հայոց ՉԽ [2])—740 հայոց և 1291 փրկչական պարոնութեան Խորէշ (?) խաթունին և եղբարց իւրոց Արղութին և Թա... (?) ամուսին որդոց Գարիմադին (?) և որդոյ մեծին Ումէկին ու այլ որդոյ խաթունին մեք բ (2) եղբարքս ... սապետ ... (?) վդ. և Կարապետ եդաք ի հիմն ի վերայ եղեալ հիմանս և շինեցաք զանգակատուն և եկեղեցի յանուն սբ. Հրեշտակապետացն Գաբրիէլի և Միքայէլի սակաւ ընչիւք ու քեռոյն մեր Իգնատոսի արդեամբ բազմաւք վերագրին պատրոնայն դրաք պարիսպ շուրջ եկեղեցոյս և այլ աշխատութիւնս ըստ մերում կարի և Սարգ... (?) վարդապետ հայր վանիցս և միաբանքս հաստատեցին տարին ... (?) պատարագ որ յեկեղեցիս ... սապետ (?) վարդապետին և Կարապետին սահմանեցին. արդ աղաչեմ ամենայն ժառանգաւորդ յիշման արժանի առնէք զամենայն աշխատեալս ի սմա ևս տաւել Զաքսոն (?) և զԳրիգորն»։

Այս արձանագրութիւնից արդէն պարզ երևում է՝ առաջին, որ զանգակատունը շինուել է ուրիշ շէնքի վրայ—«եդաք ի հիմն ի վերայ եղեալ հիմանս». երկրորդ, որ այդ տեղի է ունեցել վանքի հիմնարկութիւնից հարիւր տարի յետոյ, երրորդ, որ Երկրորդ

[1]) «Շինեաց և գրատուն մի գեղեցկաշէն յարկօք, արուեստաւոր ունելով զհիւսն Մխիթար, որ և բազում ևս աշխատ եղև եկեղեցեացն և վանիցն»։ Նոյնը, էջ 129։

[2]) Վանքի սկզբնաւորութիւնից ուղիղ ճիշտ հարիւր տարի յետոյ։

յարկի մէջ գտնուած խորանները կոչւում են Գաբրիէլ և Միքայէլ հրեշտակապետների անուններով։ Ափսոս, որ հիմնադիր վարդապետներից մէկի և այդ ժամանակուայ վանահօր անունները չեն կարդացւում. ըստ Կիրակոս պատմագրի յիշած անունների՝ մօտաւորապէս այս միջոցին վանահայր պէտք է եղած լինի Յովասափ։

Երկրորդ յարկի տարածութիւնը արևելքից—արևմուտք 7 արշին է, իսկ հարաւից—հիւսիս 10 արշին 4 վերշոկ. բարձրութիւնը 10 արշին 2 վերշոկ. խորաններից իւրաքանչիւրի երկարութիւնն է 2 արշին 8 վերշոկ, լայնութիւնը 1 արշին 14 վերշոկ. բարձրութիւնը 3 արշին ու կէս։

## VII

## ՍՈՒՐԲ ԳԷՈՐԳ

Վանքի հանդէպ, հարաւային կողմից, բլրակի վրայ կառուցուած է մի փոքր սագաշէն եկեղեցի սուրբ Գէորգի անունով. թէ արտաքուստ և թէ ներքուստ եկեղեցին շինուած է սրբատաշ քարով. թէ պատերի, թէ կաթուղիկէի և թէ գմբէթի քարերից շատերն այժմ թափուած են. արտաքուստ, կաթուղիկէի շուրջն արձանագրուած է.

«ՉԳ—703 հայոց և 1254 փրկչական թվ. Տէր Աստուած ողորմեա՛ Խաչատուր վարդապետի ու Բարսեղին շինողաց եկեղեցւոյս և ամենայն աշխատողացն ի սմա ամէն»։

Կիրակոս պատմագրի ասելով Բարսեղը Խաչատուր վարդապետի եղբայրն է. պատմագիրն այս եկեղեցու շինութիւնը «ութհարիւր երեք» (1854 փրկչական) թուին է նշանակում [1]), այն ինչ արձանագրութիւնը 703 թիւն է կրում։ Այս թիւրիմացութիւնը մենք վերագրում ենք Կիրակոս Գանձակեցու պատմութիւնը հրատարակողի սխալմունքին [2]). որովհետև ինքը պատմագիրն այդ թուականին կենդանի չէր կարող լինել. Կիրակոսն իւր պատմութիւնը շարունակում է մինչև ՉԺԴ—714 հայոց և 1265 փրկչական թիւը. այդ մէկ. երկրորդ՝ իւր իսկ վկայութեամբ Կիրակոսն աշակերտել և գործակցել է Վանական վարդապետին—մանրամասն

---

[1]) «Եւ յութհարիւր երեք թուին Խաչատուր վարդապետն, և եղբայր իւր Բարսեղն, շինեաց եկեղեցի մի հրաշխորանի, հանդէպ վանիցն, գմբէթաւոր, յանուն սրբոյն Գէորգայ» Նոյնը, էջ 130։

[2]) Մեր ձեռքն է Մոսկուայի հրատարակութիւնը. արդեօք նոյն սխալը կրկնուած է Վենետիկի հրատարակութեան մէջ։

պատմում է Վանականի ու իւր գերութիւնը,—իսկ վերջինս վախճանուել է Ձ—700 հայոց, 1251 փրկչական թուին. հաւանական չէ, որ նա Վանականի մահից յետոյ դարձեալ 103 տարի ապրէր։ Երևի ձեռագրի «յեւթհարիւր»ը արտագրողները կամ տպագրելիս դարձրել են «յութհարիւր»։

Սուրբ Գէորգի փոքրիկ, սիրուն գմբէթը կանգնած է 4 փոքր կամարների վրայ. յատակը սալաքարով է ծածկուած. եկեղեցու թէ պատերը և թէ գմբէթը չորս կողմից լուսամուտներ ունին։ Բեմի աջ և ձախ կողմերում կան պատարագամատոյց խորաններ։ Հարաւային պատի վրայ արձանագրուած է.

«Ի տաւնի սրբոյն Գէորգայ ա պատարագ Շէրանշահի է անխափան»։

Եկեղեցու թէ երկարութիւնը և թէ լայնութիւնը 6 արշին է. բեմի բարձրութիւնը 1 արշին 2 վերշոկ։ Տաճարի շուրջը կան խաչքարեր և գերեզմանաքարեր. քարերից մէկի վրայ գրուած է. «Այս է հանգիստ Մկրտիչ պարոն Տր. ի ՌՃԻԴ»—1124 հայոց ու 1675 փրկչական թուին։

VIII

## ԳՈՇ ՄԽԻԹԱՐԻ ԴԱՄԲԱՐԱՆԸ

Սուրբ Գէորգ եկեղեցուց դէպի արևմուտք, մի փոքր աւելի բարձր բլրի վրայ կանգնած է հասարակ քար ու կրով շինուած և փայտածածկ շէնք, որ երկու սենեակներից է բաղկացած. արևելեան մասը յարմարացրած է բեմի՝ խաչկալով ու վէմ քարով, իսկ արևմտեան մասում, փոքրիկ շրջանի մէջ դրուած են երկու տապանաքարեր. և չնայելով, որ մէկի վրայ գրուած է Գրիգոր քահանայ, իսկ միւսի վրայ Աղան, հենց այս տեղն է համարւում Գօշի աճիւնը պարունակող դամբարանը։ Թէ տեղացիները և թէ հեռու գիւղերից գալիս են այս տեղից հող տանելու՝ ցաւերից ազատուելու և հիւանդութիւններից բուժուելու համար. այս միևնոյն բանը լինում էր և Կիրակոս պատմագրի օրերում [1]։

Շիրմի պարզութիւնից էլ երևում է Մխիթար Գօշի հոգու

[1] «Եւ թաղեալ հանգուցին զնա առաջի դրան եկեղեցւոյն փոքրագունի, որ կայ ի գլուխ վանացն յարևմտից կողմանէ։ Եւ մինչև ցայսօր գերեզման նորա օգնէ ցաւագնելոց, որք հաւատով աղաւինին յաղօթս նորա, և զհող տեղւոյն հանապազ տանեն ի պէտս հիւանդաց մարդոյ և անասնոյ, զի Աստուած-զփառաւորիչս իւր փառաւորէ կենդանութեամբ և մահուամբ»։—Նոյն. էջ 128.։

վեհութիւնը. այնքան փառաւոր և հոյակապ չէնքեր կառուցանել տալով, իւր համար այս պարզ և անշուք դամբարանն է շինել տալիս [1]։

Դամբարան-մատուռի երկարութիւնն է 10 արշին և կէս. լայնութիւնը 4 արշին 2 վերշոկ։ Դամբարանի հարաւային պատի տակ կանգնած է մի խաչքար, որի պատուանդանի վրայ արձանագրուած է.

«Սարգիս Սարկաւագ կէսաւրեայ փոխեցաւ ի սբս. յիշեցէք»։

Վերջացնելով մեր նկարագիրը, չենք կարող չափսոսալ, որ Գոշայ վանքի նման մի թանկագին պատմական յիշատակարան այսօր բոլորովին անխնամ և անտէր է մնացել։ Ճիշտ է, մեր ժամանակի քաղաքակրթութեան պահանջներն ուրիշ են, բայց այդ չէ նշանակում, թէ եղած սրբավայրերը, որ մեր նախնեաց յիշատակարաններն են և դարերի ընթացքում առաջ են մղել մեր երկրի քաղաքակրթութիւնն ըստ ժամանակի պահանջի, պէտք է թողնենք, որ մեր աչքի առաջ քայքայուեն։



[1]) «Եւ ի ժամանակի ծերութեան, ի գլուխ վանիցն յաջմէ կողմանէ շինեաց եկեղեցի մի չքնաղ գերեզմանի իւրոյ, կրով և վիմօք մածուցեալ սրբատաշ, յանուն Համբարձման Քրիստոսի Աստուծոյ մերոյ, օրհնեալն յաւիտեանս ամէն»։ Նոյնը, էջ 126։